Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՆՈՅԵՄԲԵՐ 21 1961








**ԿԵՑՑԵ՛ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ՝ ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՈՒ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ



### ԱԳԻՏԱՏՈՐԻ ՕՐԱՑՈՒՅՑ






Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*


## СОДЕРЖАНИЕ

Стр.

### ТЕМЫ ДЛЯ БЕСЕД И ДОКЛАДОВ



### КАЛЕНДАРЬ АГИТАТОРА




**Адрес редакции—Ереван; ЦК КП Армении, II этаж, ком. 60, тел. 2-52-78.**

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԾՐԱԳՐԻ ՄԱՍԻՆ

## ԸՆԿԵՐ Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

— Քսաներորդ համագումարը,— ասում է
Ն. Ս. Խրուշչովը,— Կենտրոնական Կոմիտեին
հանձնարարել էր պատրաստել Սովետական
Միության Կոմունիստական պարտիայի նոր
Ծրագրի նախագիծ։ Կենտրոնական Կոմի-
տեն կատարեց այդ հանձնարարությունը և
Ծրագրի նախագիծը, պարտիայի, ժողովրդի
կողմից քննարկվելուց հետո, մտցնում է հա-
մագումարի քննարկմանը։

Մեր համագումարը պատմության մեջ կը-
մտնի որպես կոմունիզմ կառուցողների
համագումար։ Այս ամբիոնից սիրո և նվիր-
վածության առաջին խոսքերը մենք ուղղում
ենք մարդկության հանճարներ, բանվոր դա-
սակարգի մեծ առաջնորդներ Մարքսին,



Էնգելսին, Լենինին։ Սոցիալիզմը, որի ան-
խուսափելիությունը գիտականորեն կան-
խատեսեցին Մարքսն ու Էնգելսը,,սոցիա-
լիզմը, որի կառուցման պլանը կանխագծեց
Լենինը, Սովետական Միությունում դարձել
է ռեալ իրականություն։ Այժմ մեր երկիրը
գնում է դեպի նոր բարձունքներ՝ կոմունիզ-
մի բարձունքները։

Քսաներորդ դարը կոմունիզմի փառահեղ
հաղթանակների դարն է։ Առաջին դարակե-
սում մեր մոլորակի վրա ամուր հաստատ-
վեց սոցիալիզմը, երկրորդ դարակեսում կը-
հաստատվի կոմունիզմը։ Դրա ուղին ցույց է
տալիս մեր պարտիայի նոր Ծրագիրը, որը
արդարացիորեն անվանում են արդի դարա-
շրջանի Կոմունիստական մանիֆեստ։

Ծրագրի նախագծում մարմնավորված է
պարտիայի կոլեկտիվ միտքը։ Սովետական
բոլոր մարդիկ ասում են. դա մեր ծրագիրն
է, այն բխում է մեր իղձերից և ձգտումնե-
րից։

Ծրագրի գաղափարներն արտահայտում
են ամբողջ մարդկության պայծառ երազանք-
ները։ ՍՄԿՊ Ծրագրի նախագծին ջերմորեն
հավանություն տվեցին եղբայրական պար-
տիաները։ Այն մեծ խանդավառությամբ դի-
մավորեցին ամբողջ աշխարհի պրոլետարնե-
րը, աշխատավորները։ Եվ դա վկայում է կո-

մունիզմի ուժի մասին, մարդկության ճակատագրի համար մեր Ծրագրի մեծ նշանակության մասին։

Ն. Ս. Խրուշչովը բնութագրում է այն մեծ ուղու հիմնական էտապները, որ մեր երկիրն անցել է 1917 թվականի հոկտեմբերից հետո, խոսում է ինդուստրացման և կոլեկտիվացման հաջողությունների, կուլտուրայի ու գիտության զարգացման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման մասին։

Սոցիալական բնագավառում պարտիան կենսագործեց ժողովրդական մասսաների դարավոր իղձերը։ Լուծվեց ամենաբարդ պրոբլեմը՝ ազգերի փոխհարաբերությունների պրոբլեմը, ՍՍՌՄ-ում կազմավորվել է ընդհանուր բնորոշ գծեր ունեցող տարբեր ազգությունների մարդկանց պատմական նոր ընդհանրություն՝ սովետական ժողովուրդ։

Արմատապես փոխվել են մարդկանց կյանքի պայմանները։ Աշխատավորների անհեղ խարազանը՝ գործազրկությունը, վաղուց ոչնչացված է։ Բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, գործազրկության վերացմամբ և աշխատանքային օրվա կրճատմամբ հանդերձ, Սովետական իշխանության տարիներին ավելացել է 5,8 անգամ, գյուղացիների ռեալ եկամուտները



ավելի քան 6 անգամ։ ՍՍՌՄ-ում բնակարանային վարձը աշխարհում ամենացածրն է։ Կենսագործվում է հարկերի վերացման օրենքը։ Մարդու կյանքի միջին տևողությունը հասել է 69 տարվա։

Ապա զեկուցողն ասում է, որ արդիականության ռևոլյուցիոն մեծ ուժերը վճռականորեն փոխել են աշխարհի դեմքը, իմպերիալիզմը անվերադարձ կերպով կորցրել է տիրապետությունը ժողովուրդների մեծ մասի վրա։

Եթե 1919 թվականին սոցիալիստական աշխարհը կազմում էր երկրագնդի տարածության ընդամենը 16 տոկոսը և բնակչության 7,8 տոկոսը, ապա 1961 թվականին սոցիալիստական աշխարհն արդեն կազմում է երկրագնդի տարածության 25,9 տոկոսը և բնակչության 35,5 տոկոսը։ Իմպերիալիստական խոշոր տերությունները և նրանց գաղութները 1919 թվականին կազմում էին երկրագնդի տարածության 44,5 տոկոսը և բնակչության 48,1 տոկոսը, իսկ 1961 թվականին կազմում են տարածության 13,7 տոկոսը, բնակչության 17,9 տոկոսը։ 1919 թվականին բնակչության 69,2 տոկոսը ապրում էր գաղութներում, կիսագաղութներում և դոմինիոններում. 1961 թվականին այդ թիվն իջել է 2,8 տոկոսի։

Այս համեմատությունը վկայում է, որ արդիականության ռևոլյուցիոն մեծ ուժերը վճռականորեն կերպարանափոխել են աշխարհը, իմպերիալիզմը անդառնալիորեն կորցրել է տիրապետությունը ժողովուրդների մեծ մասի նկատմամբ։ Պարզվել է այն գլխավոր մայրուղին, որով առաջ է գնում մարդկությունը։ Այդ մայրուղին սոցիալիզմն է։

Մեր դարաշրջանում հասարակության առաջընթաց զարգացման հիմնական արդյունքերն են՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումը, գաղութային սիստեմի փլուզումը, կապիտալիզմի համակողմանի խիստ թուլացումը և նրա ընդհանուր ճգնաժամի նոր սրումը։

Կապիտալիստական սիստեմի տնտեսական զարգացման տեմպերը դանդաղում են, մի շարք երկրներում հազիվ առաջ անցնելով բնակչության աճից, տնտեսական ճգնաժամերը հաճախակի են դառնում, առանձնապես ԱՄՆ-ում։ Հսկայական չափերով աճել է միլիտարիզմը։ Ազգային եկամտի 15—20 տոկոսը ծախսվում է սպառազինության վրա։

Քսաներորդ դարի առաջին կեսին պատերազմների ու նրանց նախապատրաստման



վրա ծախսված միջոցներով կարելի էր մեր մոլորակի ամբողջ բնակչությունը կես դար ձրի պահել հացով։ Այդ միջոցներով կարելի էր կառուցել բարեկարգ բնակարաններ 500 միլիոն ընտանիքների, այսինքն երկրագնդի բնակչության երկու երրորդի համար։

Պատմությունն առաջ է գնում այնպես, ինչպես կանխագուշակել էին Մարքսը և Լենինը։ Սոցիալիզմի ուժերը, համաշխարհային առաջադիմության բոլոր ուժերը աճում են, ժողովուրդներն ավելի ու ավելի վճռականորեն են խզում կապերը իմպերիալիզմի հետ։ Իմպերիալիզմի կործանումը և համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի հաղթանակը անխուսափելի են։

Երրորդ Ծրագրի ընդունումը նոր ուղենիշ է պարտիայի և ամբողջ սովետական հասարակության զարգացման պատմության մեջ։ ՍՄԿՊ ծրագրերը կարելի է համեմատել եռաստիճան հրթիռի հետ։ Առաջին աստիճանը մեր երկիրը պոկեց կապիտալիստական աշխարհից, երկրորդը՝ նրան հասցրեց սոցիալիզմին, իսկ երրորդը կոչված է դուրս բերելու կոմունիզմի ուղեծիր։

Զեկուցման մեջ բնորոշվում են Ծրագրի նախագծի հիմնական գծերը, Ծրագիր, որը նոր էտապ է նշանավորում Մարքսի, Էնգելսի, Լենինի ռևոլյուցիոն տեսության

զարգացման գործում։ Նախագծի ամբողջ ոգին, ողջ բովանդակությունը արտացոլում են մարքսիզմ-լենինիզմի միասնությունն ու անխզելիությունը։ Նրանում լիակատար մարմնավորում գտավ «ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության» լոզունգը։

Ծրագրի նախագիծը ելնում է միջազգային նոր պայմաններից. կոմունիզմի կառուցումը ծավալվում է ոչ թե կապիտալիստական շրջապատման մեջ, այլ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյության, իմպերիալիզմի ուժերի նկատմամբ սոցիալիզմի ուժերի, պատերազմի ուժերի նկատմամբ խաղաղության ուժերի աճող գերակշռության իրադրության մեջ։ Այն ներթափանցված է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, իսկական կոմունիստական հումանիզմի ոգով, ժողովուրդների խաղաղության ու եղբայրության գաղափարներով։

Ծրագրի նախագծի պատմական շրջանակները 20 տարի են։ Այդ ժամանակամիջոցում, ասում է Ն. Ս. Խրուշչովը, մենք հիմնականում կկառուցենք կոմունիստական հասարակարգը։ Տնտեսական բնագավառում կստեղծվի կոմունիզմի նյութատեխնիկական բազան. սոցիալական հարաբերությունների բնագավառում տեղի կունենա



տարբերությունների դեռևս գոյություն ունեցող մնացորդների վերացումը դասակարգերի միջև, նրանց միաձուլումը կոմունիզմի աշխատավորների անդասակարգ հասարակության մեջ, հիմնականում կվերացվեն քաղաքի և գյուղի, իսկ այնուհետև՝ ֆիզիկական ու մտավոր աշխատանքի էական տարբերությունները, կաճի ազգերի տնտեսական և գաղափարական ընդհանրությունը, կզարգանան կոմունիստական հասարակարգի մարդու գծերը, որը ներդաշնակորեն իր մեջ զուգորդում է բարձր գաղափարայնությունը, համակողմանի կրթվածությունը, բարոյական անաղարտությունը և ֆիզիկական կատարելությունը. քաղաքական բնագավառում դա նշանակում է, որ բոլոր քաղաքացիները կմասնակցեն հասարակական կառավարմանը, սոցիալիստական դեմոկրատիայի ամենալայն զարգացման շնորհիվ հասարակությունը կնախապատրաստվի կոմունիստական ինքնակառավարման սկզբունքների լիակատար իրագործմանը։

Երկու տասնամյակի ընթացքում ՍՍՌՄ-ում կստեղծվի կոմունիզմի նյութատեխնիկական բազան։ Դա գլխավոր տնտեսական խնդիրն է, մեր պարտիայի գլխավոր գծի հիմքը։ Այդ մեզ հնարավորություն կտա զարգացնել իրենց հզորությամբ չտեսնված

արտադրողական ուժեր և աշխարհում առաջին տեղը գրավել բնակչության մեկ շնչին ընկնող արտադրությամբ, ապահովել բոլոր պայմանները՝ հետագայում ըստ պահանջմունքների բաշխման անցնելու համար։ Միայն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ուղիով կարելի է շահել տնտեսական մրցությունը կապիտալիզմի հետ։

Առաջիկա 20 տարում ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները նախատեսվում են մոտավորապես երկու տրիլիոն ռուբլի։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը կաճի առնվազն 6 անգամ, իսկ գյուղատնտեսության համախառն արտադրանքը՝ մոտավորապես 3,5 անգամ։ 20 տարուց հետո ՍՍՌՄ-ը կթողարկի գրեթե երկու անգամ ավելի արդյունաբերական արտադրանք, քան այժմ արտադրվում է ամբողջ ոչ սոցիալիստական աշխարհում։

Համատարած էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարը կոմունիզմի կառուցման ամբողջ Ծրագրի առանցքն է։ Պետք է կառուցվեն 180 հզոր հիդրոէլեկտրակայաններ, մոտ 200 շրջանային ջերմաէլեկտրակայաններ, յուրաքանչյուրը մինչև երեք միլիոն կի-



լովատ կարողությամբ, ինչպես նաև 260 խոշոր ջերմաէլեկտրակենտրոններ։

Պարտիայի Ծրագիրը նախատեսում է նաև մեքենաշինության վիթխարի զարգացումը։ Կկառուցվեն մեքենաշինական և մետաղամշակման 2800 նոր ձեռնարկություններ։ 1900 հին ձեռնարկություններ կվերակառուցվեն։ Մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերության արտադրանքի արտադրության ընդհանուր ծավալը կավելանա 10—11 անգամ։ Քիմիական արդյունաբերության արտադրանքը նոմենկլատուրայի ինտենսիվ ընդլայնմամբ հանդերձ կաճի մոտավորապես 17 անգամ։ Սև մետալուրգիան պետք է ապահովի տարեկան մոտ 250 միլիոն տոննա պողպատի ձուլում։ Արդեն ինը տարի հետո Սովետական Միությունում պողպատի ձուլումը մոտ 55 միլիոն տոննայով կգերազանցի պողպատի ձուլման ներկա մակարդակը ԱՄՆ-ում։

Ն. Ս. Խրուշչովը խոսում է նաև գունավոր մետաղների, շինանյութերի արտադրության զարգացման, սպառման առարկաների արտադրության ավելացման, հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրողական ուժերի տեղաբաշխման բարելավման խնդիրների մասին։

Պարտիայի Ծրագրի նախագիծը տալիս է

գյուղի սոցիալական, տնտեսական և քաղաքական այն փոփոխությունների խորը բնորոշումները, որոնք տեղի են ունեցել կոլտնտեսային կարգի հաղթանակի, գյուղատնտեսության սոցիալիստական սիստեմի հաստատման շնորհիվ։ Մեր պարտիան կարող է իրավամբ հպարտանալ, որ դաստիարակել է նոր գյուղացիություն, որը համաքայլ է ընթանում հերոսական բանվոր դասակարգի հետ, հանդիսանում է նոր կյանքի ակտիվ կառուցողը։

Նախատեսված է քսան տարում գյուղատնտեսության արտադրանքի ընդհանուր ծավալն ավելացնել երեք և կես անգամ, հացահատիկի համախառն արտադրությունը՝ ավելի քան 2 անգամ, միսը՝ 4 անգամ և կաթինը՝ գրեթե 3 անգամ։

1960 թվականին հացահատիկի արտադրությունը կազմել է 8,2 միլիարդ փութ։ 1970 թվականին կարտադրվի մոտ 14 միլիարդ, իսկ 1980 թվականին՝ 18—19 միլիարդ փութ հացահատիկ։ Մինչև 1980 թվականը հացահատիկի գնումները պետք է հասցվեն 7 միլիարդ փթի։

Զեկուցման մեջ մեծ ուշադրություն է նվիրված ոռոգացիային, դաշտերի ոռոգմանը։ Իրագործելով ոռոգացիոն շինարարության



ծրագիրը, մեր երկիրը կկարողանա լրացուցիչ կերպով արտադրել միլիոնավոր տոննա բամբակ, եգիպտացորեն, բրինձ, շաքարի ճակնդեղ և անասնապահական շատ մթերքներ։

Ամենակարևոր խնդիրներից մեկն էլ գյուղատնտեսության անխտիր բոլոր օղակների հետագա մեքենայացման ու էլեկտրիֆիկացման համար, տեխնիկայի է՛լ ավելի լավ օգտագործման համար մղվող պայքարն է։ Անհրաժեշտ է լուրջ միջոցառումներ ձեռք առնել տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության հետագա զարգացման համար։

Սոցիալիստական գյուղատնտեսությունը, կոլտնտեսականների և սովխոզների բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակի վերելքի և ժամանակակից տեխնիկայով գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հագեցման համեմատ, կմոտենա արդյունաբերության մակարդակին։ Գյուղատնտեսական աշխատանքը կդառնա ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը։

Զեկուցողը մանրամասնորեն խոսում է ժողովրդական բարեկեցության վերելքի և ժողովրդի ամենաբարձր կենսամակարդակին հասնելու մասին։ Արդեն առաջին տասը

տարվա ընթացքում սովետական մարդկանց բոլոր խավերը կկարողանան ապրել առատության մեջ, նյութապես ապահովված կլինեն։ Բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտները մոտակա տասը տարում կաճեն երկու անգամ, իսկ 20 տարում՝ ավելի քան 3,5 անգամ։ Մոտակա տասնամյակի ընթացքում վերջ կդրվի բնակարանների պակասությանը։ Երկրորդ տասնամյակի վերջում յուրաքանչյուր ընտանիք կապահովվի առանձին բարեկարգ բնակարանով։

Կառուցվող կոմունիզմի երկիրը կդառնա աշխարհում ամենակարճ աշխատանքային օրվա երկիր։ Միաժամանակ բանվորների և ծառայողների վճարովի արձակուրդների տևողությունը կավելանա և կհասնի երեք շաբաթվա, իսկ այնուհետև՝ մեկ ամսվա։ Վճարովի արձակուրդների սիստեմը աստիճանաբար կտարածվի կոլտնտեսականների վրա։ Արդեն մոտակա տասնամյակի ընթացքում ՍՍՌՄ-ում կլուծվի պատմական նշանակություն ունեցող խնդիրը՝ կանհետանա ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների կատեգորիան։

Ժողովրդական բարեկեցության վերելքի մյուս ուղին սպառման հանրային ֆոնդերի ավելացումն է։ Պարտիան նախատեսում է առողջապահության հիմնարկների ցանցի





հետագա ընդլայնումը, յուրաքանչյուր ընտանիքի ձրի ապահովումը բարեկարգ բնակարանով և հիմնական կոմունալ ծառայություններով։

Կոմունիզմի անցնելիս, շարունակում է Ն. Ս. Խրուշչովը, արտադրողական ուժերի հզոր վերելքի հետ մեկտեղ տեղի է ունենում սոցիալիստական հասարակական հարաբերությունների աստիճանական վերաճումը կոմունիստական հարաբերությունների։ ՍՍՌՄ-ի զարգացման մեջ սկսվել է պատմական այն ժամանակաշրջանը, երբ անմիջականորեն լուծվում է ազատ ու գիտակից աշխատավորների անդասակարգ կոմունիստական հասարակարգի ստեղծման խնդիրը։

Պարտիայի Ծրագրի նախագծում դրված և լուծված է կոմունիզմի տեսության ու պրակտիկայի մի նոր կարևորագույն հարց՝ բանվոր դասակարգի դիկտատուրայի պետության համաժողովրդական պետության վերաճելու, այդ պետության բնույթի ու խնդիրների և կոմունիզմի օրոք նրա ճակատագրի հարցը։ Համաժողովրդական պետությունը կարևորագույն ուղենիշ է սոցիալիստական պետականության՝ կոմունիստական հասարակական ինքնակառավարման վերաճման ճանապարհին։

Պետությունը դեռ երկար կպահպանվի կո-





մունիզմի առաջին փուլի հաղթանակից հետո։ ՍՍՌՄ-ում զարգացած կոմունիստական հասարակարգի կառուցմամբ և միջազգային ասպարեզում սոցիալիզմի հաղթանակի և ամրապնդման դեպքում կվերանա պետության անհրաժեշտությունը, և նա կմահանա։

Բերելով համոզիչ թվեր և օրինակներ, զեկուցողն այնուհետև ցույց է տալիս, որ սոցիալիզմի աշխարհը անշեղորեն և հետևողականորեն ընթանում է դեմոկրատիայի զարգացման ու ընդլայնման ուղիով, իսկ կապիտալիզմի աշխարհը՝ նույնիսկ պոչատ բուրժուական դեմոկրատիայի ավելի ու ավելի նեղացման ու սահմանափակման ուղիով։

Ծավալուն կոմունիստական շինարարությունը նոր էտապ է ՍՍՌՄ-ում ազգային հարաբերությունների զարգացման մեջ։ Նախատեսվում է միութենական ռեսպուբլիկաների տնտեսության կոմպլեքսային զարգացումը և մասնագիտացումը։ Նրանցից յուրաքանչյուրի էկոնոմիկան այսուհետև ևս կզարգանա որպես ամբողջ Սովետական Միության միասնական էկոնոմիկայի անկապտելի մասը։ Ազգերի և ազգությունների մերձեցմանը նպաստում են նաև կուլտուրական շինարարությունը, գաղափարական աշխատանքը։ Ուժեղանում է հոգևոր հարստությունների փոխադարձ փոխանակումը։ Այս ամենը տանում է դեպի կոմունիստական հասարակության ապագա միասնական համամարդկային կուլտուրայի կազմավորումը։



Պարտիայի ծրագրային նպատակն է՝ ավելի մատչելի դարձնել բարձրագույն կրթության բոլոր ձևերը։ Մինչև 1980 թվականը ենթադրվում է բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների թիվը հասցնել 8 միլիոնի, այսինքն մեծացնել ավելի քան երեք անգամ։

Զեկուցման մեջ բնութագրվում են ժողովրդի հանրակրթական և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման, գիտության ու գրականության և արվեստի զարգացման խնդիրները։

Մեր պարտիայի Ծրագրի կենսագործումը խոր ներգործություն կունենա համաշխարհային պատմության ընթացքի վրա, ասում է Ն. Ս. Խրուշչովը։ Կառուցվող կոմունիզմը իր օրինակի ուժով մարքսիզմ-լենինիզմի դրոշի տակ է գրավում աշխատանքի հարյուր միլիոնավոր նոր մարդկանց ամբողջ աշխարհում։

Սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների մրցության գլխավոր ասպարեզը տնտեսական խաղաղ մրցությունն է։ Նրա արդյունքը վիթխարի չափով կորոշվի Սովե-

տական Միության ու Ամերիկայի Միացյալ Նահանգների մրցությամբ։ Ոչ միայն Սովետական Միությունը, այլև համաշխարհային սոցիալիստական սիստեմի բոլոր երկրների էկոնոմիկան զարգանում է շատ ավելի արագորեն, քան կապիտալիզմի էկոնոմիկան։ Նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ սոցիալիստական համագործակցության երկրները արդյունաբերական արտադրանքի ծավալը, ամբողջությամբ վերցրած, մեծացրել են գրեթե յոթ անգամ, իսկ կապիտալիզմի երկրները՝ երկուս ու կես անգամից էլ պակաս։ Ինչպես ցույց են տալիս տնտեսագետների նախնական հաշվումները, մինչև 1980 թվականը համաշխարհային սոցիալիստական սիստեմի բաժինը արդեն կկազմի համաշխարհային արդյունաբերական արտադրության մոտ երկու երրորդը։

Մեր երկրում կոմունիզմի կառուցումը ամբողջ սոցիալիստական համագործակցության մեջ կոմունիստական հասարակարգ ստեղծելու բաղկացուցիչ մասն է։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հաջող զարգացումը բացում է պատմական նույն դարաշրջանի շրջանակներում դեպի կոմունիզմ սոցիալիստական երկրների առավել



կամ նվազ միաժամանակ անցման հեռանկար։

Կոմունիզմը դարձել է մեր դարի ամենամեծ ուժը։ Այժմ կոմունիստական պարտիաներ են գործում 87 երկրներում և միավորում են մոտ 40 միլիոն մարդ։

Արդի դարաշրջանում միջազգային ավելի նպաստավոր պայմաններ են առաջացել համաշխարհային ռևոլյուցիոն շարժման ծավալման համար և ներքին պայմաններ՝ նոր երկրների՝ սոցիալիզմի անցնելու համար։

Ն. Ս. Խրուշչովը խոսում է այն մասին, թե մարդկության համար ինչպիսի աղետ կլիներ իմպերիալիստների կողմից նախապատրաստվող նոր պատերազմը։ Մեր ժամանակներում պատերազմը չի կարող, չպետք է հանդիսանա միջազգային վեճերի լուծման եղանակ։

Ընդունելով նոր Ծրագիրը, մեր մեծ պարտիան ամբողջ մարդկության առջև հանդիսավորությամբ հայտարարում է, որ ինքը իր արտաքին քաղաքականության գլխավոր նպատակն է համարում ոչ միայն կանխել նոր պատերազմը, այլև արդեն մեր սերնդի օրոք ընդմիշտ բացառել պատերազմները հասարակության կյանքից։ Ընդսմին, ՍՍՌՄ պաշտպանության, սովետական Զինված Ու-

ժերի հզորության ամրապնդումը սովետական ժողովրդի խնդիրների խնդիրն է։

Հրապարակման առաջին օրից, նշում է Ն. Ս. Խրուշչովը, Ծրագրի նախագիծը գտնվում է Սովետական Միության քաղաքական կյանքի կենտրոնում։ Ծրագրի գաղափարները ամենալայն արձագանքը գտան բոլոր երկրների և մայրցամաքների միլիոնավոր մարդկանց սրտերում։

Քննարկմանը մասնակցել է ավելի քան 9 միլիոն կոմունիստ, այսինքն՝ ամբողջ պարտիան։ Անց է կացվել աշխատավորների ավելի քան 500 հազար ժողով, որտեղ քննարկվել է Ծրագրի նախագիծը։ Այս ժողովներին ներկա է գտնվել մոտ 73 միլիոն մարդ։ Ծրագրի նախագծի առթիվ հանդես է եկել ավելի քան 4 միլիոն 600 հազար մարդ։ Բացի դրանից, ՍՄԿՊ Կենտկոմը, տեղական պարտիական օրգանները, թերթերի, ժուռնալների, ռադիոյի և հեռուստատեսության խմբագրությունները ստացել են ավելի քան 300 հազար նամակ ու հոդված։

Համագումարը բոլոր հիմքերը ունի հայտարարելու, որ Ծրագրի նախագծին միահամուռ կերպով հավանություն են տվել բոլոր կոմունիստները, ամբողջ սովետական ժողո-



վուրդը։ Ծրագիրը ստեղծագործական վիթխարի ուժ է ներշնչել նախահամագումարյան համաժողովրդական մրցությանը։ Եվ դա համոզիչ ապացույց է, որ պարտիան, ժողովուրդը արդեն զինվել են Ծրագրով և գործուն պայքար են ծավալում նրա կենսագործման համար։

Ն. Ս. Խրուշչովը համագումարին զեկուցում է, որ բոլոր առաջարկները ուշի-ուշով ուսումնասիրվել են Կենտրոնական Կոմիտեի կողմից, և կանգ է առնում այն առաջարկների վրա, որոնք, Կենտրոնական Կոմիտեի կարծիքով, կարող են ընդունվել։

XXII համագումարի պատգամավորների անունից, մեր պարտիայի անդամների, ամբողջ սովետական ժողովրդի անունից Ն. Ս. Խրուշչովը սրտագին շնորհակալություն է հայտնում բոլոր եղբայրական պարտիաներին, աշխարհի բոլոր կոմունիստներին՝ մեր պլանները, մեր նպատակները պաշտպանելու համար։ Մենք հավաստիացնում ենք ձեզ, արտասահմանյան մեր եղբայրներ, ասաց նա, որ մեր լենինյան պարտիան, բարձր պարզելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, իր ուժերից կախված ամեն ինչ կանի մարդկությանը խաղաղության, երջանկության ու բարգա-

վաճման հասարակարգին՝ կոմունիստական հասարակարգին մոտեցնելու համար։

Նոր Ծրագիրը ավելի ու ավելի լայն մասսաներին օգնում է հասկանալու, որ կոմունիզմը թե տնտեսական, թե քաղաքական և թե բարոյական տեսակետից գերազանցում է կապիտալիզմին։ Կոմունիզմը ժողովուրդների հույսն է, լուսաշող ապագայի երաշխիքը։

Ն. Ս. Խրուշչովը խոսում է այն հիմնական ուղղությունների մասին, որոնցով կընթանա Կոմունիստական պարտիայի զարգացումը։— Դրանք են՝ պարտիայի դերի հետագա բարձրացումը որպես հասարակական-քաղաքական կազմակերպության բարձրագույն ձևի, նրա նպատակամղիչ ներգործության ուժեղացումը կոմունիստական շինարարության բոլոր բնագավառների վրա, պարտիայի ու ժողովրդի միասնության ամրապնդումը, անպարտիական մասսաների հետ պարտիայի կապի ձևերի հարստացումը, աշխատավորների ավելի ու ավելի լայն խավերի բարձրացումը՝ պարտիայի անդամների գիտակցության և ակտիվության մակարդակին, ներպարտիական դեմոկրատիայի հետագա զարգացումը, պարտիայի



անդամի կոչման նշանակության բարձրացումը, բոլոր կոմունիստների ակտիվության և ինքնագործունեության էլ ավելի մեծ աճը, պարտիայի շարքերի միասնության և համախմբվածության ամրապնդումը։

Մեր պարտիական ու պետական նվագախմբում երիտասարդ և փորձով իմաստնացած աշխատողների զուգակցումը մարքս-լենինյան պարտիայի զարգացման օրենքն է։ Մեր պարտիայի այս հետևությունը խարսխվում է մանավորապես այն դասերի վրա, որոնք բխում են Ի. Վ. Ստալինի անձնավորության պաշտամունքի հետևանքներից։ Ծրագրի և Կանոնադրության նախագծերում ձևակերպված են այն դրույթները, որոնք պետք է երաշխիք ստեղծեն անհատի պաշտամունքի կրկնվելու դեմ։

Պարտիան հենվում է կոմունիստների, ամբողջ ժողովրդի կոլեկտիվ փորձի ու կոլեկտիվ մտքի վրա, համակողմանիորեն զարգացնում է հասարակական կազմակերպությունների, բոլոր սովետական մարդկանց նախաձեռնությունը։ Հարկավոր է անշեղորեն պահպանել և զարգացնել պարտիական կյանքի լենինյան նորմաները, կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը, ապահովել

պարտիական մասսաների խիստ վերահսկողությունը ղեկավար օրգանների և նրանց աշխատողների գործունեության նկատմամբ։

Պարտիայի ուժի և անպարտելիության կարևորագույն ակունքը նրա գաղափարական և կազմակերպական անխախտ համախմբվածությունն է։ Պարտիան իր միջոցների զինանոցում պահպանում է կազմակերպական երաշխիքներ ֆրակցիոնականության ու խմբակայնության բոլոր դրսևորումների դեմ, որոնք անհամատեղելի են լենինյան պարտիականության հետ։

Կադրերը նորացնելու, անհատի պաշտամունք թույլ չտալու, ներպարտիական դեմոկրատիան ըստ ամենայնի զարգացնելու ուղղությամբ Ծրագրի նախագծով առաջ քաշվող միջոցառումները կապված են պարտիայի մշակած գլխավոր պլանի հետ, կոմունիզմի համար պայքարի նրա տակտիկայի ու ստրատեգիայի հետ։

Ավարտելով զեկուցումը, Ն. Ս. Խրուշչովը ասում է. մեզ՝ XXII համագումարի պատգամավորներիս, մեծ պատիվ է վիճակվել քննարկելու և ընդունելու ՍՄԿՊ նոր Ծրագիրը՝ կոմունիզմի կառուցման Ծրագիրը։ Մարքսիզմ-լենինիզմի դրոշով, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ առա՜ջ, դեպի կոմունիզմի հաղթանակը։

---

# Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ ԵԶՐԱՓԱԿՄԱՆ ԽՈՍՔԸ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

Համագումարի կողմից պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետվության և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի մասին զեկուցման քննարկումից հետո հանդես գալով եզրափակման խոսքով, ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշում է, որ XXII համագումարը հանդիսանում է մեր լենինյան պարտիայի միասնության, նրա շուրջը ամբողջ սովետական ժողովրդի համախմբվածության ամենավառ ցուցադրումը։ Իր աշխատանքի ողջ բովանդակությամբ XXII համագումարը հավաստեց անսասան հավատարմություն մեր պարտիայի այն գծին, որ մշակվել էր XX համագումարի կողմից։ Այժմ էլ ավելի ակնհայտ դարձավ, որ XX համագումարը, վերացնելով անհատի պաշտամունքի ժամանակաշրջանի ողջ մրուրը, նոր էջ բացեց մեր պարտիայի պատմության մեջ, բարերար ներգործություն ունեցավ մեր երկրի զարգացման, ամբողջ համաշխարհա-

յին կոմունիստական ու բանվորական շարժման զարգացման վրա։

XXII համագումարի ուշադրության կենտրոնում է գտնվում պարտիայի Ծրագիրը՝ կոմունիստական հասարակարգի կառուցման Ծրագիրը։ Բոլոր պատգամավորներն իրենց ելույթներում, հավանություն տալով Ծրագրի նախագծին, գործարար կերպով քննարկեցին նրա կենսագործման կոնկրետ պրակտիկ ուղիները։

Պատգամավորների ելույթների համար, նշում է Ն. Ս. Խրուշչովը, բնորոշ են բարձր սկզբունքայնությունը, գործարարությունը և անհաշտությունը թերությունների նկատմամբ։ Կենտկոմի հաշվետվության և Ծրագրի նախագծի քննարկման ընթացքում արծարծվեցին ժողովրդական տնտեսության կառավարման հետագա կատարելագործման կարևոր հարցեր։ Համագումարը ցույց տվեց, որ պարտիան միահամուռ կերպով հավանություն է տալիս վերջին տարիներս այդ բնագավառում Կենտրոնական Կոմիտեի և կառավարության կիրառած միջոցառումներին, ինչպես և այն միջոցառումներին, որոնք կենսագործվել են գյուղատնտեսության ասպարեզում։



Ն. Ս. Խրուշչովը այնուհետև խոսում է համաշխարհային կոմունիստական շարժման շարքերի մեծ միասնության մասին։ XXII համագումարում մարքս-լենինյան 80 պարտիաների պատվիրակությունների ներկայությունը, նրանց ելույթները արտացոլեցին միջազգային կոմունիստական ու բանվորական, ինչպես նաև ազգային-ազատագրական շարժման ուժգին վերելքը, բոլոր երկրների կոմունիստների անխախտ հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։

Անցնելով Սովետական կառավարության արտաքին քաղաքականության հարցերին, Ն. Ս. Խրուշչովը նշում է գերմանական հաշտության պայմանագրի կնքման և այդ հիման վրա Արևմտյան Բեռլինի դրության նորմալացման կարևորությունը։ Նա ընդգծում է, որ ի պատասխան մեր խաղաղասիրական առաջարկությունների՝ արևմտյան տերությունները բացեիբաց սպառնում են զենքի դիմել։

Վաղուց ժամանակն է, հայտարարում է Ն. Ս. Խրուշչովը, որ նրանք հասկանան այն հասարակ ճշմարտությունը, որ Սովետական Միության, սոցիալիստական ամբողջ ճամբարի հետ այսօր կարելի է խոսել միայն բա-

նականության գրքից և ոչ թե ուժի գրքից։

Ինչպես արդեն նշվել է Կենտրոնական Կոմիտեի հաշվետվության մեջ, Սովետական կառավարությունը գտնում է, որ եթե արևմտյան տերությունները գերմանական պրոբլեմի կարգավորման պատրաստակամություն ցուցաբերեն, ապա ժամկետների հարցը այդպիսի նշանակություն չի ունենա։

Սակայն Սովետական Միությունը չի կարող թույլ տալ, որ բանակցությունները վարվեն հանուն բանակցությունների, որ օգտվելով դրանից, արևմտյան երկրների ներկայացուցիչները ձգձգեն խաղաղ կարգավորումը Եվրոպայում։

Վերջին ժամանակներս, նկատում է Ն. Ս. Խրուշչովը, բուրժուական պրոպագանդան շատ է աղմկում այն կապակցությամբ, որ Սովետական Միությունը ստիպված եղավ վերսկսել միջուկային զենքի փորձարկումները։ Այդ աղմկարարությունը հիստերիկ բնույթ ընդունեց այն բանից հետո, երբ համագումարում հայտարարվեց 50 միլիոն տոննա տրոտիլի ուժգնությամբ միջուկային զենքի առաջիկա փորձարկման մասին։

Պարզաբանելով այն պատճառները, որոնք Սովետական Միությանը դրդեցին վերսկսե-



լու փորձարկումները, Ն. Ս. Խրուշչովը ասում է.

— Ուղղակի սպառնալիքների և պատերազմ ծագելու վտանգի դեմ հանդիման Սովետական Միությունը ստիպված եղավ անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել իր պաշտպանունակությունը ամրապնդելու համար, սովետական ժողովրդին, սոցիալիզմի երկրների ամբողջ մեծ համագործակցության ժողովուրդներին պաշտպանելու համար։

Մեզ կանգնեցրին մեր ջերմամիջուկային զենքը կատարելագործելու և նրա նոր նմուշների փորձարկումներ կատարելու անհրաժեշտության առջև։

Ամրապնդելով Սովետական Միության պաշտպանությունը, մենք գործում ենք ոչ միայն մեր շահերի, այլև բոլոր խաղաղասեր ժողովուրդների, ամբողջ մարդկության շահերի օգտին։ Խաղաղության թշնամիները մեզ սպառնում են ուժով, նրանց պետք է հակադրվի և կհակադրվի ուժ և այն էլ ավելի ազդու ուժ։ Մենք կրկին անգամ հրավիրում ենք ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Արևմտյան Գերմանիայի և մյուս երկրների ղեկավար գործիչների ուշադրությունը, ասում է Ն. Ս. Խրուշչովը, որ ամենախելացին է դեն շպրտել «ուժի դիրքի» և «սառը պատերազմի»

քաղաքականությունը։ Միջազգային գործե-
րում հարկավոր է վարել խաղաղ գոյակցու-
թյան ռեալիստական քաղաքականություն։

Ոմանք հարձակվում են մեզ վրա, մեղա-
դրելով այն բանում, թե իբր մենք պար-
զեցնում կամ մեղմացնում ենք միջազգային
իրադրության գնահատականը, երբ ընդգծում
ենք արդի պայմաններում խաղաղ գոյակցու-
թյան անհրաժեշտությունը։ Մեզ ասում են,
որ ով շեշտը դնում է խաղաղ գոյակցության
վրա, իբր ցուցաբերում է իմպերիալիզմի
էության ինչ-որ թերագնահատում և նույնիսկ
հակասում է իմպերիալիզմի լենինյան գնա-
հատականին։

Իմպերիալիզմի լենինյան բնորոշումը,
որը բացահայտում է նրա ռեակցիոն, ագ-
րեսիվ բնույթը, իր ուժը պահպանում է նաև
այժմ։ Ընդսմին, պարտիան, եթե նա կանգ-
նած է ստեղծագործական մարքսիզմ-լենի-
նիզմի հողի վրա, պարտավոր է հաշվի առ-
նել աշխարհում առաջացած այն մեծ փո-
փոխությունները, որոնք տեղի են ունեցել
այն ժամանակվանից ի վեր, երբ Լենինը
տվեց իմպերիալիզմի վերլուծությունը։

Խոսելով սոցիալիզմի համաշխարհային
սիստեմի հզոր աճի մասին, Ն. Ս. Խրուշչո-
վը նշում է, որ իմպերիալիզմը այժմ չի կա-



րող իր կամքը թելադրել բոլորին և անար-
գել կերպով վարել ագրեսիվ քաղաքակա-
նություն։ Իմպերիալիստները հասկանում
են, որ եթե իրենք սանձազերծեն համաշ-
խարհային պատերազմ, ապա այդ պատե-
րազմում անխուսափելիորեն կկործանվի ժո-
ղովրդին ատելի իմպերիալիստական կար-
գը։

Սոցիալական տարբեր սիստեմ ունեցող
պետությունների խաղաղ գոյակցության
սկզբունքը կենսական նշանակություն է
ստանում արդի պայմաններում։ Այդ բանը
չեն հասկանում միայն անհույս դոգմատիկ-
ները։

Իր եզրափակման խոսքում Ն. Ս. Խրուշչո-
վը մերկացնում է Ալբանիայի Աշխատանքի
պարտիայի ղեկավարության սխալ դիրքը,
որը բռնել է մեր պարտիայի XX համա-
գումարի դեմ պայքարի ուղին, Սովետական
Միության և սոցիալիստական մյուս երկըր-
ների հետ բարեկամության հիմքերը խար-
խլելու ուղին։ XXII համագումարում պատ-
գամավորների և եղբայրական պարտիանե-
րի ներկայացուցիչների ելույթները համոզիչ
կերպով հաստատում են, որ մեր պարտիա-
յի Կենտրոնական Կոմիտեն միանգամայն
ճիշտ վարվեց, երբ սկզբունքայնորեն և ան-

կեղծորեն համագումարին զեկուցեց սովետա-ալբանական հարաբերությունների աննորմալ վիճակի մասին։

Ն. Ս. Խրուշչովը վստահություն է հայտնում, որ կգա այնպիսի ժամանակ, երբ ալբանական կոմունիստները, ալբան ժողովուրդը իրենց խոսքը կասեն, և այն ժամանակ ալբանական ղեկավարները ստիպված կլինեն հաշիվ տալու այն վնասի համար, որ իրենք պատճառել են իրենց երկրին, իրենց ժողովրդին, Ալբանիայում սոցիալիզմի կառուցման գործին։

Մեր պարտիան, ինչպես և առաջ, պայքար կմղի բոլոր գույնի ռևիզիոնիստների դեմ։ Անսասանորեն հետևելով մարքս-լենինյան պարտիաների խորհրդակցությունների դեկլարացիայի և հայտարարության սկզբունքներին, մենք մերկացրել և անդուլ կերպով կմերկացնենք ռևիզիոնիզմը, որը իր արտահայտությունն է գտել Հարավսլավիայի Կոմունիստների միության ծրագրում։ Մենք շարունակ կպայքարենք նաև դոգմատիզմի դեմ և մարքսիզմ-լենինիզմից կատարվող բոլոր մյուս նահանջների դեմ։

Եզրափակման խոսքում ուշադրություն է նվիրվում անհատի պաշտամունքի դատապարտման և հակապարտիական ֆրակցիոն



խմբի մերկացման հետ կապված հարցերին։ XXII համագումարը, նշում է Ն. Ս. Խրուշչովը, լիակատար իրավունքով կարելի է անվանել լենինյան պարտիայի կուռ միասնության, լիակատար միահամուռության և համախմբվածության համագումար։ Մեր ամբողջ պարտիան, ամբողջ ժողովուրդը մերժեցին ուրացողներին, որոնք դիմադրում էին ողջ նորին, ձգտում էին հասնել անհատի պաշտամունքի օրոք տիրապետած ապարատավոր մեթոդների վերահաստատմանը։

Ն. Ս. Խրուշչովը համագումարին պատմում է, որ հակապարտիական խումբը կտրականապես առարկում էր անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում իշխանության չարաշահումների հարցը XX համագումարում դնելու առաջարկության դեմ։ Համագումարից հետո ևս ֆրակցիոներները չդադարեցրին իրենց պայքարը, ամեն կերպ արգելակում էին իշխանության չարաշահումների գործի պարզաբանմանը, վախենալով, որ այդ ժամանակ կդրսևորվի իրենց դերը՝ որպես մասսայական ռեպրեսիաների մասնակիցների։

Անհատի պաշտամունքի պայմաններում պարտիան զրկված էր նորմալ կյանքից։ Իշխանությունը բռնատիրած մարդիկ դառ-

նում են պարտիային ոչ-հաշվետու անձնավորություններ, դուրս են գալիս նրա վերահսկողությունից։ Սրանումն է անհատի պաշտամունքի գլխավոր վտանգը։

Մեր պարտիայի XX համագումարը դատապարտեց անհատի պաշտամունքը, վերականգնեց արդարությունը և պահանջեց վերացնել թույլ տրված խեղաթյուրումները։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն ձեռնարկեց վճռական միջոցներ, որպեսզի թույլ չտար կամայականության և ապօրինության վերադարձ։ Մոլոտովի, Կագանովիչի, Մալենկովի և մյուսների հակապարտիական խումբը ամեն կերպ դիմադրում էր այդ միջոցառումների կենսագործմանը։

Շատ պատգամավորներ իրենց ելույթներում, շարունակում է Ն. Ս. Խրուշչովը, զայրույթով խոսեցին հակապարտիական խմբի մասնակիցների մասին, բերեցին նրանց հանցավոր գործողությունների փաստեր։ Այդ զայրույթը հասկանալի է ու արդարացված։

Ն. Ս. Խրուշչովը առանձնապես խոսում է Կ. Ե. Վորոշիլովի մասին։ Հակապարտիական խումբը նրան օգտագործում էր Կենտրոնական Կոմիտեի դեմ մղված պայքարում։ Վորոշիլովի հետ մեծ հույս էր կապ-



վում՝ որպես պարտիայի հնագույն գործիչներից մեկի։

Ընկ. Վորոշիլովը կատարել է ծանր սխալներ, ասում է Ն. Ս. Խրուշչովը։ Բայց ես գտնում եմ, որ նրան հարկավոր է վերաբերվել այլ կերպ, քան հակապարտիական խմբի մյուս ակտիվ մասնակիցներին, օրինակ՝ Մոլոտովին, Կագանովիչին, Մալենկովին։ Կենտկոմի Հունիսյան պլենումի աշխատանքի սկզբում ֆրակցիոներների դեմ սուր պայքարի պրոցեսում, երբ նա տեսավ Կենտրոնական Կոմիտեի անդամների միաձուլությունը հակապարտիական խմբի դեմ մղվող պայքարում, Կ. Ե. Վորոշիլովը հասկացավ, որ ինքը գնացել է նրանց հետ, ովքեր հանդես են գալիս պարտիայի դեմ, դատապարտեց հակապարտիական խմբի գործողությունները, խոստովանեց իր սխալները։ Դրանով իսկ նա մի ինչ-որ աստիճան օգնեց Կենտրոնական Կոմիտեին։ Մենք պետք է ընկեր Վորոշիլովին մոտենանք ուշադիր կերպով, մեծահոգություն ցուցաբերենք։

Քաղաքական բոլոր մյուս պարտիաներից մարքս-լենինյան պարտիաների տարբերությունն այն է, որ կոմունիստները, առանց տատանվելու, համարձակորեն բացահայ-

տում և վերացնում են թերություններն ու բացերը իրենց աշխատանքում։ Քննադատությունը, նույնիսկ ամենասուր քննադատությունը, օգնում է մեր առաջընթացին։ Դա կոմունիստական պարտիայի ուժի նշանն է, իր գործի նկատմամբ նրա անսասան հավատի վկայությունը։

XXII համագումարը ողջ ուժով հաստատեց, որ պարտիայի XX համագումարի գիծը պետական ու պարտիական կյանքի լենինյան նորմաների վերականգնման և հետագա զարգացման գիծը, պարտիայի ղեկավար դերի, ժողովրդական մասսաների ստեղծագործական ակտիվության զարգացման գիծը միակ ճիշտ գիծն է։ XXII համագումարը ամրապնդում է այդ բարերար գիծը։

Համագումարում տեղի ունեցած շատ ելույթներում, այնուհետև շարունակում է Ն. Ս. Խրուշչովը, հաճախ և մեր մամուլում, խոսելով մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի գործունեության մասին, ինչ-որ առանձնապես շեշտը դնում են իմ անձնավորության վրա, ընդգծում են իմ դերը պարտիայի և կառավարության կարևորագույն միջոցառումների կենսագործման ասպարեզում։



Ինձ համար հասկանալի են այն բարի զգացմունքները, որոնցով առաջնորդվում են այդ ընկերները։ Սակայն, թույլ տվեք ողջ ուժով ընդգծել, որ այն ամենը, ինչ ասվում է իմ հասցեին, պետք է վերագրվի մեր լենինյան պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հասցեին, Կենտկոմի Նախագահության հասցեին, քանի որ ոչ մի խոշոր միջոցառում, ոչ մի պատասխանատու ելույթ մեզանում չի իրագործվել ինչ-որ մեկի անձնական ցուցումով, այլ հանդիսանում է կոլեկտիվ քննարկման, կոլեկտիվ լուծման արդյունք։ Կոլեկտիվ ղեկավարության, բոլոր սկզբունքային հարցերի կոլեգիալ լուծման մեջ է մեր մեծ ուժը։

Վճռականորեն հանդես գալով մեկ անձնավորության պաշտամունքի բոլոր նողկալի երևույթների դեմ, մարքսիստ-լենինյանները միշտ ճանաչել են և կճանաչեն ղեկավարների հեղինակությունը։

Բայց ճիշտ չէր լինի առանձնահատուկ ձևով նշել այս կամ այն ղեկավարին, նրան ինչ-որ առանձնացնել ղեկավար կոլեկտիվից, զբաղվել նրա չափից ավելի գովեստով։ Դա հակասում է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին։

Իր ճառի եզրափակիչ մասում Ն. Ս. Խրուշ-

շովը կանգ է առնում երկու գաղափարախոսությունների՝ բանվոր դասակարգի գաղափարախոսության, որը արտահայտված է գիտական կոմունիզմի մարքսիստական տեսության մեջ, և շահագործող դասակարգերի գաղափարախոսության, բուրժուական գաղափարախոսության պայքարի վրա։

Այժմ երկու գաղափարախոսությունների պայքարը կրում է միանգամայն այլ բնույթ, քան մարքսիզմի արշալույսին։ Գիտական սոցիալիզմի գաղափարները տիրապետել են մասսաներին և դարձել նյութական մեծ ուժ։ Նրանք կենսագործվել են. ժողովուրդների աշխատանքով ստեղծվում է նոր հասարակարգի նյութատեխնիկական բազա։ Միայն գաղափարական ոլորտից պայքարը փոխադրվել է նյութական արտադրության ոլորտը։

Սոցիալիզմը ռեալ իրողություն է դարձել։ Սոցիալիզմի երկրների օրինակը ավելի ու ավելի հրապուրիչ է դառնում բոլոր երկրների աշխատավորների համար։ Ավելի ու ավելի լայնորեն և խորն են տարածվում մարքսիզմի գաղափարները, պատմական ստեղծագործության հանելով հարյուր միլիոնավոր մարդկանց։

Հիրավի վիթխարի են այն խնդիրները, որ



պարտիայի և ժողովրդի առջև դնում է XXII համագումարը։ Մեր համագումարը հանդիսանում է մեծ նպատակին՝ մեր երկրում կոմունիզմի կառուցմանը հասնելու՝ պարտիայի, ամբողջ սովետական ժողովրդի պատրաստակամության և վճռականության հիանալի վկայությունը։ Եվ ոչ մի տարակույս չկա, որ Սովետական Միությունում կոմունիզմը կկառուցվի. այդ է պարտիայի կամքը, ժողովրդի կամքը։

Կոմունիզմի արևն է ծագում մեր երկրի վրա։ Ամեն ինչ անենք, որպեսզի անձնվեր աշխատանքով մոտեցնենք այն օրվա գալուստը, երբ այդ արևը իր լույսով կհեղեղի մեր հիասքանչ Հայրենիքի լայնարձակ տարածությունները։

Պանծալի լենինյան պարտիայի առաջնորդությամբ առա՜ջ, դեպի կոմունիզմի հաղթանակը,— այս խոսքերով Ն. Ս. Խրուշչովը ավարտեց իր ելույթը համագումարի պատգամավորների և հյուրերի բուռն, երկար ժամանակ չդադարող ծափահարությունների և ողջույնի բացականչությունների ներքո։

---

## Մ. Վ. Լոմոնոսովի ծննդյան 250-ամյակը



*Տուտով, նոյեմբերի 19-ին, սովետական ժողովուրդը, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները և բոլոր երկրների պրոգրեսիվ հասարակությունը կնշեն ռուս մեծ գիտնական ու բանաստեղծ, խոշորագույն մտածող-մատերիալիստ և լուսավորիչ Միխայիլ Վասիլևիչ Լոմոնոսովի ծննդյան 250-ամյակը։*

*Հայրենասեր գիտնական Մ. Վ. Լոմոնոսովը ծնվել է 1711 թվականի նոյեմբերի 19-ին, Արխանգելսկի նահանգում, ձկնորսի ընտանիքում։ Մինչև 19 տարեկան դառնալը նա ապրել է իր ծննդավայրում։ 1730 թվականին նա հայրենի գյուղից ոտքով գնացել է Մոսկվա սովորելու։ Մեկ տարի հետո, 1731 թվականին Լոմոնոսովն ընդունվում է Մոսկվայի Սլավոնա-հունա-լատինական ակադեմիայում ուսանելու։ Որպես լավագույն սովորող 1736 թվականի սկզբներին նրան սովորելու են ուղարկում Պետերբուրգի Գիտությունների ակադեմիային կից համալսարանը։*

*Ինչպես նախորդ ուսումնական հաստատությունում, այնպես էլ համալսարանում երիտասարդ Լոմոնոսովը փայլում է գիտությունները սովորելու իր բացառիկ ընդունակություններով և աշխատասիրությամբ։ Այդ նկատի ունենալով՝ Պետերբուրգի Գիտությունների ակադեմիան Մ. Լոմոնոսովին գործուղում է Գերմանիա, որպեսզի նա այնտեղ շարունակի կրթությունը։ Գերմանիա-*

յում Լոմոնոսովը սովորում է սկսած 1736 թվականից մինչև 1739 թվականը։ Նա Գերմանիայում սովորում է Մարբուրգի համալսարանում, գերմանական գիտնական Խ. Վոլֆի ղեկավարությամբ։ Քիմիան և լեռնային գործը Լոմոնոսովը ուսումնասիրում է Ֆրեյբերգում։ 1741 թվականին նա վերադառնում է հայրենիք։ Մեկ տարի հետո նրան նշանակում են Պետերբուրգի ակադեմիայում ակադեմիկոսի օգնական (ադյունկտ), իսկ 1745 թվականին նույն ակադեմիայում նա աշխատում է որպես քիմիայի պրոֆեսոր։

Օրեցօր ծավալվում է Մ. Լոմոնոսովի գիտական գործունեությունը։ Մեկը մյուսի ետևից հանդես են գալիս նրա գիտական աշխատությունները, որոնք փառքով են պսակում անխոնջ գիտնականին։ Նրա «Մետալուրգիայի առաջին հիմքը կամ հանքային գործը» խորագրով աշխատությունը ժամանակին մեծ ավանդ է եղել գիտական հիմունքներով մետաղի մշակությունը զարգացնելու գործում։

1748 թվականին Լոմոնոսովի նախաձեռնությամբ Պետերբուրգի Գիտությունների ակադեմիային կից առաջինը Ռուսաստանում բացվեց քիմիայի լաբորատորիա, որտեղ Լոմոնոսովը շատ արժեքավոր փորձեր է դր-



նում։ 1752—1754 թվականներին Լոմոնոսովը կազմում է ֆիզիկական քիմիայի ձեռնարկ։ Դա աշխարհում առաջին դասընթացն էր ֆիզիկական քիմիայի վերաբերյալ։

Լոմոնոսովը առաջինը մշակեց քիմիական էլեմենտի հասկացությունը և գիտականորեն հիմնավորեց նյութի կշռի պահպանման օրենքը քիմիական փոխարկումների ժամանակ։ Հետագայում, 30 տարի անց, այդ օրենքը երկրորդ անգամ գտավ ֆրանսիացի քիմիկոս Լավուազիեն և նրա անունով մտավ գիտության մեջ։ Ֆիզիկայի բնագավառում Լոմոնոսովին է պատկանում մատերիայի կառուցվածքի թեորիան, որ թույլ տվեց նրան ճշտությամբ բացատրել շատ ֆիզիկական երևույթներ։ Նա առաջինը մշակեց ջերմության մեխանիկական թեորիան։

Մեծ են Լոմոնոսովի ծառայությունները նաև էլեկտրականության ուսումնասիրության և զարգացման բնագավառում։ 1756 թվականին էլեկտրականության բնագավառում կատարած իր գիտական հետազոտությունները Լոմոնոսովը ամփոփում է մեկ աշխատության մեջ։ Սակայն այդ աշխատությունը մնում է անավարտ։

Այնուհետև Լոմոնոսովը շատ արժեքավոր գրառումներ է կատարել տարբեր ուղղու-

թյուններով Հյուսիսային ծովում կատարած ճանապարհորդությունների և ծովային նոր ուղիներ բացելու հնարավորությունների մասին։ Լոմոնոսովին է պատկանում նորագույն բնագիտության հիմք դնելու պատիվը։ Նա հարստացրել և զարգացրել է մատերիալիստական ուսմունքը բնության մասին և ամուր հիմք դրել գիտությունը դեմոկրատական ուղղությամբ զարգացնելու կարևոր գործին։

Մեծ գիտնական Լոմոնոսովն է ստեղծել նաև ատոմա-մոլեկուլային ուսմունքը։

Լոմոնոսովը մեծ աշխատանք է կատարել գիտության և պրակտիկայի միջև կապ ստեղծելու համար։ Նա պայքարել է տեխնիկական պրոգրեսի համար, հայրենական արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման համար։ Նա Ռուսաստանի պատմության մեջ առաջինն է եղել, որ զբաղվել է գիտության բազմաթիվ ճյուղերի զարգացմամբ։ Լոմոնոսովը խոշոր հաջողության է հասել բևեռային շրջանների և հյուսիսային ծովային ուղիների հետազոտության բնագավառում։ Նա մեծ հաջողությամբ զբաղվել է գեոֆիզիկայի, քարտեզագրության, կլիմայագիտության, օդերևութաբանության, օվկիանոսագիտության հարցերով։



Ռուսաստանում Լոմոնոսովն է եղել այն առաջին գիտնականը, որ մշակել է գունավոր և հատուկ տեսակի ապակիներ ստանալու արդյունաբերական տեխնոլոգիան։ Դրա համար նա կատարել է ավելի քան 3.000 փորձ։ Փորձի ընթացքում նա իր աշակերտների հետ միասին ստեղծել է մի քանի մոզաիկ նկարներ, այդ թվում Պոլտավայի հռչակավոր ճակատամարտի հսկայական նկարը։

Լինելով առաջին ռուս բանաստեղծը, Լոմոնոսովը ստեղծել է ռուսական գրական լեզուն։ Նա 1755 թվականին կազմել և գիտականորեն մշակել է ռուսական քերականությունը։ Նրա ջանքերով ռուսաց լեզուն մաքրվեց եկեղեցական դարձվածքներից, օտարերկրյա ավելորդ բառերից և դարձավ կենդանի ու հմայիչ։

Հիացմունքով ու երախտագիտությամբ է խոսել Ա. Ս. Պուշկինը Լոմոնոսովի մասին։

«Կամքի անսովոր ուժը,— ասել է նա,— միացնելով ըմբռնողության անսովոր ուժին Լոմոնոսովը ընդգրկել է լուսավորության բոլոր ճյուղերը։ Գիտության ծարավը եղել է նրա հոգու ուժեղագույն տենչը, որ լցված է եղել խանդավառություններով։ Պատմաբան, հռետոր, մեխանիկ, քիմիկոս, հան-

քաբան, արվեստագետ և բանաստեղծ, նա ամեն ինչ փորձարկեց ու թափանցեց»։

Լոմոնոսովը անդադրում աշխատել է գիտությունը զարգացնելու, այն տարածելու հետ միասին երիտասարդ գիտնականներ, գրականագետներ, արվեստագետներ պատրաստելու համար։ Նրան է պատկանում Մոսկվայի համալսարանը հիմնադրելու պատիվը, որ այժմ կրում է Լոմոնոսովի անունը և մեր երկրին տվել է շատ ականավոր գիտնականներ։

Ինչպես տեսնում ենք, Լոմոնոսովը գիտության զանազան բնագավառներում բազմաթիվ կարևոր հայտնագործություններ է արել։ Այդ է պատճառը, որ նա գիտության պատմության մեջ առաջին տեղերից մեկն է գրավում։ Լոմոնոսովի գիտական հայտնագործությունները հետագայում, փայլուն կերպով հաստատվեցին մի քանի սերունդների գիտնականների աշխատանքով։

Ահա թե ինչու Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը որոշել է 1961 թվականի նոյեմբերի 19-ին ամբողջ աշխարհում լայնորեն նշել մեծ գիտնական Լոմոնոսովի ծննդյան 250-ամյակը։

**Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ**



Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**
№ 21 1961 г.

*ՎՖ 10385 պատվեր 554 Տպաքանակ 8203*

*Հանձնված է արտադրության 27/X 1961 թ.:*
*Ստորագրված է տպագրության 9/XI 1961 թ.:*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:*

*Գինը 8 կոպ.*